1917 № 8— Փետրուարի 26 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտաքադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбав..еръ". Tiflis, Rédaction du journal „Hamoavaber".

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպ.
Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից. Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Մեր ցաւերից Ս. Յարութիւնեանի.—Խմբագրութեան կողմից.—Համաշխարհային պատերազմը, լուրեր.—ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Պետական Դումա Վ.-ի.—Ուսուցչական ֆոնդ Իս. Յարութիւնեանի.—Կ. Հ. Բ. Ընկերութեան Ընդհանուր Ժողովը.—ԳԱՒԱՌ.—Օնի. Սոգիւթլու.—ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԵԱՆ. (Կենդրոնական Խորհուրդ. ճիւղեր. Հ. Կ. Կոմիտէ և Պարենաւորման բաժանմունքը պետական միջոցներով).—ՔՐՈՆԻԿՈՆ.—ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Տաճկահայեր. — Բուլանըղի կոտորածը, Գ. Մանասեանի.—ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.—Մահս (բանաստ.) S. Phinx-ի.—Մասիսը (բանաստ.) Ե. Պետրոսեանի.—ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ. Ինչձւ եկար Դ.-ի.—ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ.—Հայոց լեզու (Հովուեան) Գիսակի.—Վրիպակ.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ:

## ՄԵՐ ՑԱՒԵՐԻՑ

(Թիֆլիսի հայ բժիշկների մի նոր նախաձեռնութեան առթիւ)

Ամեն մի ցեղի, ամեն մի ազգի, ինչպէս և անհատի, գոյութեան, կեանքի երկարատեւութեան և լաւագոյն ապագայի համար նախ անհրաժեշտ է ֆիզիկական ամրութիւն և առողջութիւն:

Ամուր ֆիզիկական կազմուածքը այն հիմքն է, որի վրայ զարգանում է մարդկային բարոյական և մտաւոր կարողութիւնը:

Շատ իրաւացի է նկատուած, որ առողջ մարմնի մէջ զարգանում է և առողջ միտք (mens sana in corpore sano): Եթէ մարդուս կազմուածքը թոյլ է, հեշտութեամբ ենթարկւում է հիւանդութիւնների, իսկ հիւանդութիւններից քայքայւում է և անհետանում, յաճախ զոհ դառնալով վաղաժամ մահուան: Ինչ որ այս մասին կարելի է ասել անհատի մասին, նոյնը կարելի է ասել և մի ամբողջ ժողովրդի, ազգի մասին, քանի որ ժողովուրդն էլ, ազգն էլ բաղկացած են անհատներից:

Կազմակերպուած բժշկական օգնութիւնը, կանոնաւորուած առողջապահական պայմանները՝ այն կարեւորագոյն հանգամանքներն են, որոնցից անչափ շատ է կախուած մարդկային առողջութիւնը, կեանքի երկարատեւութիւնը և սերունդների աճումը:

Եւրոպական երկրների առողջապահական վիճակագրութիւնը պերճախօս կերպով ցոյց է տալիս, որ մահացութիւնը և առողջապահական պայմանները կապուած են միմեանց հետ օրգանական անժխտելի կերպով. որ-

քան վատ են ընդհանուր և անհատական առողջապահական պայմանները, նոյնքան սաստիկ է մահացութիւնը․ իսկ բարելաւ առողջապահական դրութիւնը, ընդհակառակը, համահաւասար չափով թուլացնում է մահացութիւնը։

Այս մեծ ճշմարտութիւնը գիտակցուել է մարդկութեան պատմութեան ընթացքում ամենահին դարերից սկսած։ Այդ գիտակցութեան հետեւանքը պէտք է համարել Կոնֆուկիոսի քարոզները ժողովրդին․ «Եթէ ցանկանում էք, ասում էր նա ժողովրդին, բարգաւաճիլ, թող ձեզանից ամէն մէկը հոգայ իւր առողջութեան մասին, ամրացնելով իւր կազմուածքը»։ Բրահմինների օրէնքով խստիւ արգելւում էր ոգելից (սպիրտ) ըմպելիքների գործածութիւնը, իբր առողջութիւնը քայքայող միջոց, և առաջարկւում էր յաճախ ջրով, մանաւանդ սառը ջրով լուացուել։ Ամենքին յայտնի է, որ սպարտացիների օրէնսդրութեան հիմնական գաղափարն էր՝ իրենց ցեղը բարելաւել երիտասարդութեան խիստ ֆիզիքական կրթութեամբ․ նրանց խստութիւնը հասնում էր այն աստիճանի, որ թուլակազմ, հիւանդոտ երեխաներին լեռների բարձրութիւնից վիհ էին նետում։ Ժողովրդական առողջապահական հոգսերը նշանաւոր տեղ էին բռնում և Յունաստանում, և Հռոմում, և այլ տեղերում։ Այդ նպատակով հրատարակւում էին օրէնքներ, հիմնւում էին յատուկ հաստատութիւններ։

Իսկ ներկայումս մենք տեսնում ենք և գիտութեան մէջ մի առանձին ճիւղ՝ «Հասարակական առողջապահութիւն» անունով, որն աւանդւում է համալսարանների ամբիոնից․ տեսնում ենք առողջապահութեան մասին և առանձին օրէնսդրութիւն բոլոր լուսաւոր երկրներում։ Եւ երբ ի մօտոյ ծանօթանում ենք այդ երկրների, օր․, Անգլիայի և Գերմանիայի առողջապահական վիճակագրութեանը, մնում ենք զմայլած, թէ ինչ հսկայական քայլեր են արել այդ երկու մեծ, զօրեղ և միշտ միմեանց հետ ամէն ասպարէզում մրցող ազգերը․ տարափոխիկ հիւանդութիւնները, ինչպէս են հնդախտ (քոլերայ), ժանդախտ, բծաւոր տիֆ և այլն, իբր համաճարակ, վաղուց պատկանում են առասպելական շրջանին․ մինչդեռ ուրիշ, գլխաւորապէս Ասիական երկրներում դեռ անհագին զոհեր են տանում։ Բժշկական օգնութիւնը այդ երկրներում այնքան լայն ծաւալով է կազմակերպուած, որ անհնարին է, որ հիւանդը, թէկուզ գիւղում, մնայ առանց այդ տեսակ օգնութեան։

Մահացութեան ամենամեծ տոկոսը լինում են մանուկներից, բայց այդ էլ Անգլիայում և Գերմանիայում հասել է իւր նուազագոյն չափին։ Ֆիզիքական պարապմունքները կազմուածքը ամրացնելու համար հասել են իրենց կատարելագործութեան։ Ահա թէ ինչու անգլիացիք ու գերմանացիք իրենց մտաւոր զարգացման և կարողութեան հետ առանձնապէս աչքի են ընկնում և իրենց զարգացած կազմուածքով և առողջութեամբ։ Հենց այժմեան պատերազմը փայլուն կերպով ցոյց է տալիս, թէ այդ երկու ազգերը ինչ խոշոր, միմեանց արժանի, ուժեր են թէ ֆիզիքապէս և թէ մտաւորապէս․ Նրանք համայն աշխարհը զարմացրել են իրենց դիմացկունութեամբ, տոկունութեամբ և հնարագիտութեամբ։

Ռուսաստանում էլ առողջապահութիւնը պատուաւոր տեղ է բռնում, բայց միայն ներքին նահանգներում, ուր գործում են զեմստւօներ։

Անցնելով մեծ և լուսաւոր ազգերի օրինակից մեր հայկական դառն իրականութեան, արդեօք արդարացի չէ՞ լինիլ բարձրաձայն ասելու․ «Մեր ժողովրդի առողջապահական հոգսերն ու կարիքները աղաղակող են դարձել։ Թողնել նրանց նոյն անօգնական դրութեան մէջ յանցանք է»։ Եթէ այս մասին դեռ շատ առաջ պարտաւոր էինք մտածել և միջոցներ ձեռք առնել, այժմ կրկնակի պարտաւոր ենք անելու այդ։ Պարտաւոր ենք լուրջ կերպով զբաղուել այդ ծանր խնդրով և լաւ մտածուած ու մշակուած ծրագրով դիմելու իրագործման։ Խնդիրն ստացել է անչափ լուրջ կերպարանք շնորհիւ այժմեան հայ ազգի համար կործանաբեր պատերազմի։ Մեծ կորուստներ ունեցանք և ռուսահայերս, տալով տասնեակ հազարներով զոհեր պատերազմի դաշտում, իսկ աւելի մեծ, առասպելական կորուստներ ունեցան տաճկահայերը․ հարիւր հազարաւոր անմեղ, խաղաղ հայեր սպանուեցան քրդի ու տաճկի ձեռքով, իսկ հազարաւոր էլ աքսորուեցին Միջագետք, որտեղից յայտնի չէ, թէ նրանցից ում կը վիճակուի կենդանի վերադառնալ հայրենիք։

Իսկ այն գաղթականութիւնը, որը իւր կեանքը ազատելու համար փախել է Կովկաս, նա էլ հիւծուած է, նրա առողջութիւնը քայքայուած է։

Ուրեմն մենք կանգնած ենք մի ողբալի տեսարանի առաջ․ ազգը նուազել է թւով, նրա ֆիզիքական առողջութիւնը խանգարուած է, բնական աճումը կրճատուած։

Ահա մի մեծ և պատուաւոր ասպարէզ մեր բժիշկներին գործելու իրենց մասնագիտութեամբ, բուժելով հիւանդներին ու ծանօթացնելով ժողովրդին առողջապահական գէթ այն տարրական գիտելիքները, որոնց չիմանալը յաճախ պատճառ է լինում մահուան շատ դէպքերի, մանաւանդ մանուկների շրջանում։ Թէև այս խնդիրները ընդհանուր հասարակական են, բայց դրանց իրագործման և ղեկավարման համար բժիշկները շատ անելիք ունեն և առաջին դերը պէտք է կատարեն։ Հայ բժիշկների թիւը հազարների է հասնում․ նրանք մեծ ոյժ են կազմում, սակայն նրանք համախմբուած են մեծ մասամբ մեծ քաղաքներում, իսկ գաւառը զուրկ է նրանց օգնութիւնից․ գաւառը միայն երազում է նրանց մասին և սպասում իբր երկնային մանանայի։ Հայ ժողովուրդը իւր բժիշկներից է սպասում իրեն տանջող ֆիզիքական ցաւերի բուժումը։

Մի քանի օր սրանից առաջ տեղի ունեցած դէպքը ներշնչեց մեզ այն հաւատը, որ Թիֆլիսի հայ բժիշկ-

ներն էլ, հետեւելով իրենց բագուցի ընկերներին, շարժուել են և նրանց սրտում էլ արձագանգ է գտել հիւծուած, տանջուող հայի ձայնը։

Այդ դէպքը տեղի ունեցաւ սոյն փետրուարի 18-ին, որը պէտք է արձանագրել որպէս մեր հայ բժիշկների կազմակերպուած հասարակական գործունէութեան տարեթուի (էրա) սկիզբը։

Այդ օրը Կովկասեան Հայոց Բարեգործական Ընկերութեան ընդհանուր ժողովի նիստն էր։ Ժողովականների ուշադրութիւնը լարուեց, երբ Խորհուրդը սկսեց զեկուցանել, թէ նա հաղորդելու է Թիֆլիսի հայ բժիշկների կողմից մի ուրախալի յայտարարութիւն։ Թիֆլիսի հայ բժիշկները, ժողովուելով միասին, խորհրդակցել են և որոշել՝ կազմել Բարեգործական Ընկերութեան կից բժշկական սեկցիա (բաժանմունք), որի նպատակը լինելու է՝ օգնութիւն հասցնել խեղճ ժողովրդին, գլխաւորապէս գիւղացութեան և զբաղուելու է նրա առողջապահական գործերով։ Բժշկական բաժանմունքը (սեկցիան) այդ նպատակների համար կազմակերպելու է ժողովրդական դասախօսութիւններ, հրատարակելու է գրքեր, բաց է անելու հիւանդանոցներ, սանատորիաներ, ամբուլատորիաներ, դեղատներ. կազմելու է շրջիկ բժշկական և ֆելդշերական խմբեր և այլն։

Յայտարարութիւնը բարձրացրեց բոլորի տրամադրութիւնը և գեղեցիկ տպաւորութիւն թողեց ժողովականների վրայ։

Ժողովը միաձայն ողջունեց բժիշկների ձեռնարկը և տուեց իւր պաշտօնական հաւանութիւնը բաժանմունք հաստատելու մասին Բարեգործական Ընկերութեան կից. նշանակեց նախնական ծախսերի համար մի որոշ գումար, խոստանալով իւր բազմաթիւ գաւառական ճիւղերի կողմից ամենայն աջակցութիւն՝ նիւթական և բարոյական։

Ընկերութիւնը կատարեց իւր պարտքը այն չափով, ինչպէս պահանջւում էր նրանից սկզբում։ Այժմ հայ բժիշկներին է մնում դիմել իրենց համակրելի նախաձեռնութեան, տոգորուած անկեղծ սիրով դէպի տառապող հայ ժողովուրդը, լի յոյսերով և խոր հաւատով։

Հայ ժողովրդի առողջապահութեան և նրա աճման խնդիրն է դրւում հայ բժիշկների առաջ և հրաւիրւում են իրենց ծառայութիւնը մատուցանելու։

Հայ ժողովուրդը ակնածութեամբ փափագում է տեսնել հայ բժիշկների յղացած մտքի իրագործումը։

Ժամանակ է գեղեցիկ խօսքերից անցնել գեղեցիկ գործի։

Սպասում ենք։

Ս. Յարութիւնեանց

# ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

«Համբաւաբերի» խմբագրութիւնը պարբերաբար նուէրներ է ստանում ուղարկելու թերթս գիւղական դպրոցներին, գրադարաններին և ազգային այլ հաստատութիւններին։

Խմբագրութիւնս խնդրում է գաւառական այն հաստատութիւններից, որոնք չեն կարող իրենց նիւթական միջոցներով ստանալ մեր թերթը, շուտափոյթ ուղարկեն իրենց ճիշդ հասցէն՝ «Համբաւաբերը» ձրիաբար ստանալու համար։

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

## ԼՈՒՐԵՐ

Վերջին երկու շաբաթուայ ընթացքում եւրոպական ճակատների վրայ նշանակալից պատերազմական գործողութիւններ չեն պատահել։ Միջագետքում սակայն թէ անգլիական և թէ ռուսական զօրքերը յարձակման են դիմել թիւրքական բանակի դէմ։ Անգլիական զօրքը աջող արշաւանք գործելով գրաւել է Կուտէլամարան, գերի առնելով 1730 հոգի և մեծ աւար. նրանք քայլ առ քայլ առաջանում են և նորանոր դիրքեր գրաւելով մօտենում Բաղդադին։ Ռուսական զօրամասերն եւս սկսել են յարձակողական դիրք բռնել Պարսկաստանում. նրանք տիրել են արդէն Համադանին և հետապնդում են թիւրքերին Դօվլէթաբադի ուղղութեամբ։

Արեւմտեան ճակատում եւս անգլիացիները աջող արշաւանքներ են գործել գերմանացիների դէմ, գրաւելով գերմանական ամուր դերպով ամրացրած դիրքերը և խրամատները 50 քառակուսի մղոն տարածութեամբ։

Միւս ճակատների վրայ աչքի ընկնող փոփոխութիւն չի կատարուել։ Պատերազմական ներկայ վիճակը սպասողական մի դրութիւն է, կռուող կողմերը պատրաստւում են գարնանային վճռական գործողութիւնների։

Ֆրանսական, ռումանական և ռուսական ճակատներում տեղի ունեցող մանր-մունր ընդհարումները, հետախուզական և առաջապահ զօրամասերի կռիւների բնոյթ են կրում և առայժմ զուրկ են վճռական նշանակութիւնից։

Միացեալ Նահանգները դեռ եւս չեն ճշտել իրենց անելիքը։ Նախագահ Վիլսոնը լիազօրուած է ամերիկեան պատգամաւորական պալատից միջոցներ ձեռք առնել զինուած չէզոքութիւն հաստատելու համար, որ սակայն ծերակոյտը չի հաստատել։

Գեն. Բրիւսիլովը յայտնել է, որ ռուսաց զօրքը կանգնած է ամուր դիրքերի վրայ և առաջխաղացման վտանգ չի սպառնում թշնամին։

Յայտնել է նաև, որ Գերմանիայի դրութիւնը պարէնի կողմից ճգնաժամային է և որ այդ իրողութիւնը մօտիկ ապագայում շատ պիտի նպաստի դաշնակիցների աջողութեան։

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

Ռուսաց օրէնսդրական հաստատութիւնը վերսկսում է իր գործունէութիւնը աւելի ծանր քաղաքական և գրաքննական

պայմաններում, քան անցեալ տարի էր։ Եւ հաւանօրէն ոչ ժողովուրդը կըկարողանայ իր խօսքը ասել նրան, ոչ էլ նա իր խօսքը—ժողովուրդին։ Հասարակական կեանքի այն տագնապալից ժամին, երբ ամբողջ Ռուսաստանը նրանից ճշմարտութեան և փրկութեան խօսք էր սպասում՝ նա լռեց։ Այսօր էլ գալիս է նա մի համր դիմակախաղ եւս կատարելու և նորից ցրուելու, մինչև որ ռուսական հասարակական կեանքը իր զարգացմամբ կը կանգնի իսկական պարլամենտական ճանապարհի վրայ։

14 փետր. աւագ նիստում Նախագահ Ռոձեանկոն ասել է. «Պատերազմը մտնում է իր վերջին ամենադժուար փուլի (փազիսի) մէջ, երբ պէտք է լարուեն կամքի ամբողջ թափը, ժողովրդական ամբողջ ուժերը, որպէսզի հասնենք ցանկալի նպատակին... Մենք գիտենք, որ մեր բանակի զգացած դժուարութիւնները յաճախ կախուած են և ներքին սխալներից, որոնք արուեցին առաջ և արւում են այժմ էլ. (բացականչութիւններ՝ «ճիշտ է»)։ Դումայի վրայ պարտք է ընկնում պնդել, որ դրանք վերանան և թող մեր բանակն իմանայ, որ մենք մեր այդ պարտքը կը կատարենք մինչև վերջը»։ Նախագահը համոզուած է, որ միայն Դումայից պահանջուած մինչև վերջը ճշմարիտ և անկեղծ, բայց... «զսպուած, հանգիստ» խօսքը կարող է օգնել յաղթանակի դժուարին և անյետաձգելի գործում։

Ապա խօսում է երկրագործութեան նախարար Ռիտտիխը պարենաւորման և մասնաւորապէս հացի բաշխման մասին. Նա լոկ ընդհանուր բառերից այն կողմը չի անցնում և դեռ ի միջի այլոց հացի ճգնաժամի համար մեղադրում է գիւղացութեանը։

Նկատի ունենալով, որ Դուման պարենաւորման վերաբերեալ մի քանի հարցերով պէտք է զբաղուի՝ Շիդլովսկին (1) առաջադիմական-ազգայնական, կենտրոնի, զեմսթ-հոկտեմբերեանների, հոկտ. 17-ի և ժողովրդական ազատութեան խմբակների անդամների կողմից Պ. Դումային առաջարկում է անմիջապէս անցնել հետևեալ յայտարարութեան քննութեանը. «Պատերազմի երկու և կէս տարուան ընթացքում բոլոր պատերազմող երկիրների համար բոլորովին պարզուեց, որ պատերազմը պետական իշխանութիւնից պահանջում է այնպիսի հեղինակութիւն, այնպիսի ոյժ, որոնք հնարաւորութիւն տային այդ իշխանութեանը իրականացնել ժողովրդական կեանքին իր ամբողջ խորութեամբ վերաբերող հարցերը։ Որպէսզի իշխանութիւնն իսկապէս այդպիսի հեղինակութիւն և ոյժ ունենայ, ամենից առաջ անհրաժեշտ է, որ երկիրը կառավարող մարդիկ լինեն ազգի գլուխներ, յետոյ այդ մարդիկը պէտք է կառավարութեան հետ համակարծիք լինեն հերթական խնդիրներում։ Եւ վերջապէս այդ միութիւնը պէտք է պաշտպանուի օրէնսդրական հիմնարկութիւնների կողմից»։ Ապա յայտարարութիւնը շեշտում է, որ մինչև դաշնակիցները այդ նպատակին հասնելու համար հիմնական բարեփոխութիւններ կատարեցին կառավարութեան մէջ՝ մեզ մօտ, ընդհակառակը, կառավարութեան գլուխ կանգնեցին միանգամայն անվստահելի և «օրէնսդրական հիմնարկութիւնների հետ ձեռք-ձեռքի աշխատելու անընդունակ» մարդիկ։ Իսկ վերջում հարցում են անում նախարարներին՝ «ինչ միջոցներ են ձեռք առնուելու վերոյիշեալ անտանելի դրութիւնը վերացնելու համար»։

Չխէիձէն ողջունում է բլոկի այդ յայտարարութիւնը, որի քննութիւնը պէտք է կատարի Դուման, ասելով. «Այդ կառավարութիւնը 1907 թ. յունիսի 3-ի կառավարութիւնն է, որի նշանաբանն է. «Այդպէս էր, այդպէս էլ կըլինի»։ Այդպիսի կառավարութեան հետ համագործակցութիւնը անհնարին է։ Ճարտասանը խորհուրդ է տալիս գնալ այն ճանապարհով, որով գնացին մեր բարեկամ ֆրանսիացիների նախնիքները 18-րդ դարի վերջում։ Դումայի մեծամասնութիւնը մէկ և կէս տարի է, որ զբաղւում է այս բեմից արտասանելու «պատասխանատու մինիստրութիւն», բայց ամեն անգամ առաջին բառին լեզուն բըռնւում է և երկիւղից քարանում»։

Պուրիշկևիչը կառավարութեան և օրէնսդրական հաստատութիւնների միջև անհամաձայնութեան գլխաւոր պատճառ համարում է Ռուսաստանում աւելի ու աւելի գլուխ բարձրացնող գերմանական կուսակցութիւնը։ Ուստի դրութիւնը օրէցօր աւելի է վատանում. «Անորակելի են հացի փոխարէն ժողովրդին քար տուողները։ Դումային յանդիմանում են, որ նա չէ աշխատում կառավարութեան հետ. բայց նա չէ կարող ձեռք-ձեռքի գնալ այդպիսի իշխանութեան հետ։ Երկրին ամենից առաջ յուզում է ոգևորուած ժողովրդի և հակազգային իշխանութեան միջև եղած անդունդը»։ Այս նկատի ունենալով՝ ճառախօսը աննըպատակ է գտնում Դումայի ճառերը և գուշակում նրա արձակուելը։

Եֆրեմովը յայտնում է առաջադիմականների կողմից, որ Ռուսաստանի ներկայ վտանգի պատճառը հին պետական կազմն է, որը միայն պէտք է փոխել և ոչ թէ նախարարներին։ Քանի որ այդ կազմը չի փոխուել և պատասխանատու նախարարութիւն չի ստեղծուել՝ ապարդիւն է խօսել միւս բոլոր հրատապ հարցերի մասին։

Կառավարութեան և Դումայի միջև հակադրութեան վրայ է մատնանշում նաև Միլիւկովը և պերճախօս փաստ համարում, որ նոր աւագ նախարարը ոչ մի խօսք չունեցաւ ասելու Դումային. սրանով նա ապացուցեց, որ կատարելապէս անհամապատասխան է իր վրայ դրած պարտականութեանը։ Այդպիսի կառավարութեան «ճակատագրական դանդաղկոտութիւնը մահաբեր հետևանքներ» են խոստանում. «Երբ բաղդատում էք՝ թէ մեր ազգն ինչ կարող էր տալ ընդհանուր յաղթութեան համար՝ այնքանի հետ, ինչ տալիս է մեր կառավարութիւնը, մարդուս սրտից արիւն է հոսում»։ Ժողովուրդը ուզում է առաջ գնալ, կառավարութիւնը յետ է գնում։ Նա թոյլ չէ տալիս կազմակերպուել և յաղթել... «Երբ ժողովրդական մեծ զոհողութիւնների արդիւնքները ռիսկի են ենթարկւում անճարակ իշխանութեան ձեռքում՝ այն ժամանակ «սոսկ բնակիչը» քաղաքացի է դառնում և ուզում է իր ձեռքն առնել հայրենիքի բախտը»։ Ճառախօսը կարծում է, որ երբ ժողովուրդը համոզուի, որ այս կառավարութեամբ Ռուսաստանը չէ կարող յաղթել՝ այդ դէպքում նա կը յաղթէ իր կառավարութեան կամքի հակառակ, բայց կը յաղթէ։

Կերենսկին (աշխատաւորական) քննադատում է կառավարութեան քաղաքականութիւնը և Միլիւկովի ճառը. «Ռուսաստանի տրամադրութիւնն ընկնում է, երկիրը գտնւում է քաոսային դրութեան մէջ... Այդ քաոսը քանդեց հասարակական կեանքի հիմքը»։ Կառավարութիւնը և տիրող դասերը քաղաքական և պատերազմական մեծ ծրագրեր են առաջադրում, որոնց անկարող են հասնել։ «Մեր կառավարութեան աշխատանքը կատարելապէս աւերեց երկրի տնտեսական կեանքը»։ Այդ կերպ երկիրը միայն քանդել կարելի է. պէտք է հրաժարուել բոլոր նուաճողական ծրագրներից և մի կերպ վերջ տալ այս պատերազմին։

Չիւբինսկին խօսելով պարենաւորման մասին՝ գտնում է, որ անմխտեմութիւնն է հացի շուկայից հեռանալու պատճառը։ «Հասարակութիւնը կռւում է կառավարութեան դէմ և ասում է. «Հեռացէք այդ աթոռներից»։ Թող կառավարութիւնը կատարէ իր պարտքն երկրի առաջ և քաշուի»։

Կոնովալովը փետր. 17-ին խօսելով կառավարութեան հասարակական ոյժերի, մասնաւորապէս ռազմարդիւնաբերական կոմիտէի բանուորական խմբակի դէմ հանած հալածանքի մասին՝ շեշտում է, որ բանուորներն էլ քաղաքացիներ են, թէև իրաւազուրկ, և կարող են քաղաքական հարցերով հետաքրքրուել։

Չխէիձէն ցոյց է տալիս, որ բանուորութեան դրութիւնը պատերազմի ընթացքում աւելի է վատթարացել, որ նա շահագործւում է բոլորի կողմից։

Կերենսկին, ինչպէս և Պուրիշկեւիչը բողոքում են, որ իրենց ճառերը խիստ աղճատման են ենթարկւում։ Նա պահանջում է ամենքի համար կարծիքների և գործունէութեան ազատութիւն։ «Դումայի մեծամասնութեան հասարակական շահերը կապուած են կառավարութեան հետ. դրա համար է, որ նա միայն գեղեցիկ բանաձևեր է ասում, բայց չի իրագործում»։

Այսքան «գեղեցիկ խօսքեր» ասելուց և հարցապնդումներ անելուց ու ընդունելուց յետոյ՝ ռուս ժողովրդի ճառախօսների «խօսարանը» վերջացնում է իր «գործունէութեան» առաջին շաբաթը։ Յաջորդ նիստը փետրուարի 21-ին։

Վ.

---

## ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՖՈՆԴ

Հայ ուսուցիչների ապահովութեան խնդիրը մեր դպրոցների գոյութեան հաստատուն հիմնաքարերից մէկն է. այն դպրոցը, որի ուսուցիչները նիւթապէս ապահովուած չեն, չի կարող երկարատև գոյութիւն ունենալ և արդիւնաւոր գործ առաջացնել։ Սխալ ուղիով են առաջ գնում այն դպրոցական հաստատութիւնները, որոնք երկրորդական նշանակութիւն են տալիս ուսուցիչների նիւթական ապահովութեանը և տրամադրուած գումարներով աշխատում են միայն աշակերտների թիւն աւելացնել։ Դպրոցը այն հաստատութիւններից մէկն է, որոնց միայն արտաքին, ձևական գոյութիւնը ոչ մի ներքին արժէք չունի. դպրոցի ներքին արժէքը և քաղաքակրթական նշանակութիւնը պէտք է արտայայտուի ոչ թէ նրա պատերով և դասարաններում տեղաւորուած աշակերտների թուով, այլ նրա տուած դաստիարակութեամբ և ուսուցումով։ Իսկ դաստիարակողը և ուսուցանողը ուսուցիչն է։

Երբ դպրոցական հաստատութիւնները ուսուցիչ են հրաւիրում՝ հետաքրքրւում են նրա ստացած կրթութեամբ և առաջին հարցն այն է լինում՝ թէ ինչ ցենզ ունի նա. այս հետաքրքրութիւնը հարկաւ պատահական ցանկութիւն չէ, այլ հետևանք այն համոզմունքի, որ որոշ չափով կրթութիւն ստացած մարդը միայն ձեռնհաս է և կարող է ուսուցանել և դաստիարակել ուրիշներին։ Ուսուցչին հրաւիրողները, երբ համոզւում են, որ նա այդ տեսակէտով համապատասխանում է իրենց պահանջին՝ սակարկութեան մէջ մտնելով աշխատում են որչափ հնարաւոր է քիչ ռոճկով պայմանաւորուել նրա հետ։ Սեպտեմբերին ուսուցիչն սկսում է իւր աշխատանքը և դրանով էլ վերջանում է դպրոցի ղեկավարների մտահոգութիւնը. աշակերտներ կան, ուսուցիչն էլ արդէն սկսել է պարապմունքը, էլ մտածելու ինչ կայ։

Մոռացութեան է տրւում այն հանգամանքը, որ նոյն իսկ ամենալաւ և բարձր կրթութիւն ստացած ուսուցչի պարապմունքը արդիւնաւէտ չի կարող լինել՝ եթէ նա խաղաղ սրտով և հոգեկան անդորրութեամբ չի պարապում։ Մոռացւում է, որ ուսուցիչը մեքենայ չէ, այլ հասարակ մահկանացու, որ ունի իւր հոգեկան ապրումները, մտքի թռիչքը, անողոք ֆիզիկական պահանջները։ Արդ, կարո՞ղ է անդորր սրտով պարապել ուսուցիչը, երբ աշակերտներին տեսնելով մտաբերէ իւր հարազատ զաւակներին, որոնք թոշակ չտալու կամ զգեստ ու կօշիկ չունենալու պատճառով տանն են մնացել. կարո՞ղ է ուսուցիչը անվրդով դաս տալ, երբ նրա հարազատը հիւանդ պառկած է անկողնում, իսկ ինքը միջոց չունի բժիշկ հրաւիրելու, դեղ գնելու, սննդարար կերակուր հայթայթելու... կարո՞ղ է ուսուցիչն այսպիսի պայմաններում չջղայնանալ, չզայրանալ, չանիծել իւր բաղդն ու կոչումը։ Իսկ ջղայնացած, զայրացած ուսուցչի պարապմունքը կարո՞ղ է արդիւնաւոր լինել։ Հեռո՛ւ, հեռո՛ւ պէտք է լինի ջղայնութիւնը դպրոցի խաղաղ շէմքից, անմեղ, միամիտ մանուկների հայեացքից։

Անհրաժեշտ է լուրջ միջոցներ ձեռնարկել՝ դպրոցների եկամուտները զգալի չափով աւելացնելու, որպէս զի ուսուցիչները բաւարար ռոճիկ ստանան և ստիպուած չլինեն իրենց անմիջական պարտաւորութիւնը թողած նիւթական պակասութիւնների ու զրկանքների մտահոգութեամբ զբաղուել։

Սակայն այս բոլորը դեռ պատկերի մի երեսն է. շրջենք նաև միւս տխուր երեսը։ Ենթադրենք, որ ռոճիկների որոշ յաւելումով ուսուցիչը կարողանում է առանց մեծ նեղութիւնների ապրել և խաղաղ սրտով նուիրուելով իւր սիրած գործին՝ արդիւնք առաջացնել. ազատ ժամանակն էլ նուիրում է գրական, լրագրական կամ հասարակական աշխատանքի։ Նա գոհ է իւր համեստ ապրուստով, և աշխարհային ունայնութիւնները չեն գրաւում նրան. բարեխղճութեամբ կատարում է հայկական միջավայրում «կուլտուրտրեգէտ»-ի դերը և ժողովրդի ապագայ բարեկեցութեան հեռանկարով ոգևորւում։

Բայց երբ այդ աշխատանքի ժամանակ նրան որև է դժբաղդութիւն պատահի, հիւանդանայ, այնպէս որ ստիպուած լինի պաշտօնը թողնել... ո՞վ է նրա մասին մտածողը, ո՞վ է նրա աղքատ ընտանիքի նիւթական կարիքները հոգացողը. իսկ եթէ նա տանջուելով՝ կնքի իւր մահկանացուն, ո՞վ է նրա զաւակներին ապրուստ տուողը։ Դպրոցի ղեկավարները մարդասիրաբար կվճարեն նրա մի քանի ամսուայ կամ ամենաշատը մի տարուայ ռոճիկը և դրանով վերջացած կը համարեն իրենց բարոյական պարտականութիւնը. իսկ այնուհետև՞։

Ահա հայ ուսուցչի—խօսքս վերաբերում է առաւելապէս ծխական-տարրական դպրոցներին—դժբախտ ճակատագիրը. քանի երիտասարդ է նա, ոգևորւում է գաղափարներով, արհամարհում է ամեն նեղութիւն և զրկանք, անկեղծութեամբ նուիրւում է սերունդներ դաստիարակելու գործին, սակայն ապագայում ստիպուած է լինում զղջալ, չկարողանալով իւր բարոյական պարտքը կատարել հարազատ զաւակների նկատմամբ. նա երբէք չէ ցանկանում, որ իւր որդին էլ հայ ուսուցիչ լինի...։

Արդեօք նոյնն է ուսուցչի վիճակը քաղաքակրթուած երկրներում, հարկաւ ո՛չ։ Նախ այնտեղ աւելի լաւ են վարձատրւում ուսուցչին, երկրորդ՝ նրանք ունին ուսուցչի ապահովութեան գանձարկղներ և թոշակագրամներ։

Տասը տարուց աւելի է, որ մեր մէջ արծարծւում է ուսուցչական ընդհանուր թոշակարկղ հիմնելու գաղափարը, սակայն մեր դպրոցական բարձր իշխանութիւնն անտարբեր է մնում... 1911 թ., երբ տօնւում էր Կ. Հ. Բ. Ընկերութեան երեսնամեայ յոբելեանը, Ընկերութեան Խորհուրդը գեղեցիկ միտք յղացաւ՝ յոբելեանը յաւերժացնել կազմելով դպրոցական և ուսուցչական խոշոր ֆոնդեր։ Այդ ցանկալի և համակրելի գաղափարն իրականացաւ, սակայն տարաբաղդաբար ոչ խոշոր չափով. երկու ֆոնդերից իւրաքանչիւրն ունեցաւ մօտ 50,000 ռուբլի, որոնց իւրաքանչիւրի տարեկան տոկոսիքն է մօտ 2500 ռ.։

Տարեկան 2500 ռուբլով բնականաբար չէր կարելի թոշակարկղ հիմնել և Ընկերութեան Խորհուրդը ստիպուած եղաւ մի հրահանգ մշակելու՝ կարիքաւոր ուսուցիչներին նպաստ տալու համար։ Գումարի քչութիւնը ստիպեց նոյնպէս այնպէս սահմանափակել նպաստի համար դիմողների քանակը, որ այժմ ուսուցիչները մինչև իսկ քաշւում են դիմելու և այդ փոքրիկ գումարն էլ մեծ մասամբ անգործադրելի է մնում։

Այժմ, երբ քաղաքներում, մանաւանդ վաճառականների

մօտ, ահագին գումարներ և հարստութիւններ են դիզուել, պէտք է աշխատել ուսուցչական ու դպրոցական ֆոնդերը մեծացնել առատ նուէրներով։ Եթէ ազդեցիկ և հասարակութեան մէջ վարկ ունեցող անհատներն աշխատեն այդ ուղղութեամբ, այդ գործը կարող է յաջողութիւն ունենալ, որով կարելի կըլինի գոնէ փոքր չափով մեր ուսուցիչների նեղ օրերին օգնութեան հասնել։

«Համբաւաբերի» յաջորդ համարում կը հրատարակենք ուսուցչական ֆոնդի «Հրահանգը», որով Կ. Հ. Բ. Ընկ.-Թեան Խորհուրդը ցանկանում է միջոց տալ մեր գաւառական ուսուցիչներին ծանօթանալու և օգտուելու այն սուղ միջոցներից, որ տրամադրում է ֆոնդը։ Հրահանգն իրաւունք է տալիս նպաստ ստանալու այն ուսուցիչներին (հարկաւ նաև վարժուհիներին), որոնք 1913 թ. յունուարին ուսուցիչ են եղել կամ այդ թուից յետոյ են ուսուցչական ասպարէզ մտել։

*Իսահակ Յարութիւնեան*

---

# Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԸՆԴ. ԺՈՂՈՎԸ

Փետրուարի 18-ին, երեկոյեան, կայացաւ Կ. Հ. Բ. Ը.-Թեան ընդհանուր ժողովը, նոյն Ընկերութեան գրադարանի դահլիճում։

Նիստից առաջ կատարուեց հանդիսաւոր հոգեհանգիստ՝ տասը քահանաների մասնակցութեամբ ու գլխաւորութեամբ Թիֆլիսի առաջնորդ Մխիթար Սրբազանի՝ ի յիշատակ Ընկերութեան նոր բարերար Աբգար Ալեքս. Անանեանի։ Հոգեհանգստին ներկայ էին հանգուցեալի եղբայր Միհրան Ալեքս. Անանեանը և Ընկերութեան մեծ թւով անդամներ ու հանդիսականներ։

Հոգեհանգստից յետոյ՝ Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը, բանալով նիստը, առաջարկեց ժողովին՝ ընտրել ընդհանուր ժողովի նախագահ և քարտուղար։ Նախագահ ընտրուեց պ. Հ. Առաքելեանը, իսկ քարտուղար՝ Խ. քահ. Խուցեանը։

Ընդհ. ժողովի նախագահը, դիմելով ժողովին, բացատրեց, որ հանգուցեալ Ալեքսանդր Անանեանը՝ նորերս վախճանուած Աբգար Անանեանի հայրը, եղել է Բարեգործակ. Ընկերութեան հիմնադիրներից մէկը և երկար տարիներ վարել է Խորհրդի նախագահութեան պաշտօնը, մեծ ծառայութիւն է մատուցել և նուիրել է 30,000 ռ. գիւղական դպրոցների օգտին։ Նրա որդին՝ Աբգ. Անանեանը հետևելով հօր օրինակին, կտակեց Ընկերութեան 126,000 ռ.։ Նախագահն առաջարկեց Ալեքսանդր և Աբգար Անանեանների յիշատակը յարգել յոտնկայս։

Բարեգործական Ընկերութիւնը ունեցել է նաև հետևեալ բարերարների կորուստը. պ. Սմբատ Տէր-Առաքելեանի, Սարգիս Մելքումեանի (Խորհրդի նախկին անդամ), Նիկոլայ Միրիմանեանի, Եգոր Կարամուրզայեանի, Խորհրդի նախկին քարտուղար Ա. Եզեկեանի և Պետրոգրադի ճիւղի վարչութեան նախագահ Շխինեան քահանայի, որոնց յիշատակը յարգուեց յոտնկայս։

Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը այնուհետև զեկուց ժողովին յիշեալ բարերարների մասին հետևեալը.

Սմբատ Տէր-Առաքելեանը նուիրել է մէկ տուն 110,000 ռ. և 10,000 ռ. կանխիկ դրամ։

Սարգիս Մելքումեանը իւր ամբողջ ունեցածը 5000 ռ. բանաւոր կերպով կտակել և գործադրութիւնը յանձնարարել է եղբօրը՝ պ. Բաղդասար Մելքումեանին, որ ամենայն սրբութեամբ կատարում է հանգուցեալ եղբօր կամքը։

Նիկոլայ Միրիմանեանը՝ Թիֆլիսի քաղաքային վարչութեան մի համեստ պաշտօնեայ, կտակել է իւր բոլոր ունեցած դրամը, արժեթղթերը և բնակարանի կարասիքը, մօտ 15,000 ռ. արժողութեամբ։

Եգոր Կարամուրզայեանը նուիրել է կտակով 10,000 ռ., որից 7,500 ռ. ստացուել է արդէն, մնացեալ գումարն էլ շուտով կստացուի։

Ապա ժողովի անդամ-քարտուղար պ. Յ. Շահնազարեանը, ընդ. ժողովի նախագահի առաջարկութեամբ, զեկուց կենտրոնի և ճիւղերի նախահաշիւները, որը տպագրելու ենք «Համբաւաբերի» յաջորդ համարում։

Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան մի ուշագրաւ յայտարարութիւն արաւ. Թիֆլիսի հայ բժիշկների մի մեծ խումբ ի նկատի ունենալով հայ ժողովրդի ներկայ ծանր դրութիւնը առողջապահական տեսակէտից, որոշել է կատարել իւր բարոյական պարտականութիւնը ազգի առաջ, վճռել է կազմել մի յանձնաժողով Կ. Հ. Բ. Ընկ.-Թեան կից և օգտուելով Ընկերութեան Խորհրդի և նրա բազմաթիւ ճիւղերի աջակցութիւնից, օգնութիւն հասցնելու ժողովրդի ֆիզիկական կարիքներին, գլխաւորապէս հայ գիւղացութեան և գաղթականութեան, տալով նրանց առողջապահական կանոններ, ստեղծելով կարևոր հաստատութիւններ, հիւանդանոցներ, ամբուլատորիա, սանատորիա և այլն։ Այս մտքով բժշկական խումբը դիմել է Ընկերութեան Խորհրդին, որը իւր կանոնադրութեան համաձայն գտնելով առաջարկը, ողջունել է բժիշկների նախաձեռնութիւնը և որոշել է ներկայացնել այն՝ Ընկ. ժողովի համաձայնութեան՝ առայժմ սկզբունքային հողի վրայ, իսկ հետևեալ ժողովին կը ներկայացուին յատուկ կանոններ և գործունէութեան ծրագիրը։

Ընդհ. ժողովը միաձայն ողջունեց բժիշկների նախաձեռնութիւնը և ցանկութիւն յայտնեց, որ բժշկական նորակազմ խումբը անմիջապէս գործի անցնի։ Ժողովը՝ Խուցեան քահանայի առաջարկութեամբ ցանկութիւն յայտնեց, որ հայ իրաւաբաններն էլ հետևեն բժիշկների օրինակին և մտածեն մեր գիւղական ժողովրդին իրաւաբանական օգնութիւն հասցնելու։ Խորհրդի կողմից յայտնուեց, որ այդ բանի առթիւ դիմումն կանուի հայ իրաւաբաններին։

Գ. Ս. Յարութիւնեանը զեկուց Կովկասեան Գլխաւոր Կոմիտէի առաջարկութիւնը Դիլիջանի գաղթականական կահկարասիք պատրաստող արհեստանոցի շուրջը։ Հայկական Կենտրոնական Կոմիտէն դեռ 1915 թուի սկզբներին ձեռնարկել է որբանոցներին կից արհեստանոցներ բանալու, գիւղատնտեսական աշխատանքներ սկսելու և որբերին այդ ուղղութեամբ պատրաստելու, որպէսզի երբ վերադառնան հայրենիք, աշխատանքի ընդունակ լինեն և ծառայեն ոչ միայն իրենց կեանքի պահպանութեան, այլ և ընդհանուր երկրի վերամշակութեան և վերականգնման։ Այդ տեսակէտով Դիլիջանը այն վայրերից մէկն է, ուր բազմաթիւ որբանոցներ կան և որբերի թիւը հազարից անցնում է։ Որբերի մէջ կան այնպիսիներ, որոնք ֆիզիկապէս ընդունակ են արհեստի և դաշտային աշխատանքների։ Աղջիկներին պէտք է սովորեցնել տանին տնտեսութիւն և ձեռագործի զանազան տեսակներ։ Կ.Կոմիտէն սկզբում տղայոց համար բացեց կօշկակարութեան և ատաղձագործութեան, իսկ աղջիկների համար կար ու ձևի, գուլպայագործութեան և գորգագործութեան արհեստանոցներ։

Վերջում Կոմիտէն որոշեց բաց անել նաև Վիէննայի տեսակի կահկարասիներ պատրաստող ատաղձագործութեան արհեստանոց, նկատի առնելով, որ այդ արհեստը շատ մեծ օգուտ է տալիս թէ գաղթական երեխաներին և թէ տեղական ժողովրդի մեծամասնութեան, որոնցից կը պատրաստուեն հետզհետէ վարպետներ և ժողովրդի միւս մասերի մէջ կը տարածեն այդ նոր և օգտակար տեսակի արհեստը։

Նիւթական միջոցների համար Կենտրոնական Կոմիտէն դիմումներ արաւ Կովկասի Գլխաւոր Կոմիտէին՝ նրա օժանդակութիւնը խնդրելով այդ գործի համար։ Կովկասի Կոմիտէն նախագահութեամբ իշխ. Օրլովի համակրանքով վերաբերուեց

այդ առաջարկին և տուեց 7,000 ռ.։ Այդ գումարով սկսուեց գործը. Նախ Կոմիտէն վերցրեց մի կտոր 3-4 դեսեատին հողաբաժին անտառի մէջ, Դիլիջանից մէկ վերստ հեռու։ Այդ հողաբաժնի մի մասի վրայ կառուցուեցին մի շարք շինութիւններ որբերի համար (արհեստանոց, հանրակացարան, սեղանատուն, կառավարչի, վարպետների սենեակ), իսկ միւս մասը յատկացուել է որբերի գիւղատնտեսական աշխատանքների համար։ Լոնդոնի Լորդ-Մէրի Կոմիտէի ներկայացուցիչները այցելելով արհեստանոցն ու ագարակները շատ հաւանեցին և հրաւիրեցին հայերին նպաստող օրիորդ Ռոբինզոնի Կոմիտէին օգնութեան հասնելու սկսուած համակրելի գործին։

Այդ Կոմիտէները զանազան ժամանակներում ուղարկել են 6,250 ռ., 6000 ռ. և 4,282 ռ. այդ գործի համար։ Արհեստանոցը մօտ 19,792 ռ. նուէր է ստացել, իսկ մօտ 23,900 ռ. ծախս է ունեցել։

Հ. Կ. Կոմիտէն ցանկանալով յիշեալ արհեստանոցը դարձնել համայն գաղթականութեան և տեղացիների կենտրոնական արհեստանոց, ուր սովորեն և աշխատեն Կովկասում գտնուող գաղթ. երիտասարդներ ու որբեր, ծրագրել է ընդարձակել այն և դիմել է Կովկասի Գլխաւոր Կոմիտէին ու խնդրել 8,000 ռ. նպաստ։

Կովկ. Գլխաւոր Կոմիտէն գրաւոր կերպով դիմել է Խորհրդին, որ վերջինս ներկայացնի ընդհանուր ժողովի քննութեան, թէ արդեօք Ընկերութիւնը համաձայն է Դիլիջանի արհեստանոցը յանձնելու Գլխաւոր Կոմիտէին իբրև սեփականութիւն և գաղթականների վերադառնալուց յետոյ արհեստանոցի հետ վարուի այնպէս ինչպէս ինքը կը ցանկանայ, աւելացնելով որ այդ արհեստանոցում պէտք է աշխատեն միմիայն գաղթականները։ Մտքերի փոխանակութիւնից յետոյ, Ընկ. ժողովը գտաւ, որ այդ արհեստանոցը՝ մի կարևոր հիմնարկութիւն է անտառային մասերում ապրող հայ ժողովրդի համար և որոշեց պահել այն իբրև Ընկերութեան սեփականութիւն և ծախսերը հոգալ զանազան տեղերից ստացուած նուէրներով։

(Շարունակութիւնը հետեւեալով)

## ԳԱՒԱՌ

*Օնի.*—Տեղիս Կ. Հ. Բ. Ընկ.-թեան ճիւղի վարչութիւնը յունուարի 5-ին հայ աղքատներին սիմինդր բաժանեց, ամեն մի անդամին մի-մի պուդ. պէտք է ասել, որ թանկութիւնը նեղում է աւելի չունևոր դասակարգին։

—Անցած տօներին քահանաների հիւանդութեան պատճառաւ, հայ հասարակութիւնը Ջրօրհնեաց հանդէսից և տնօրհնէքից զրկուեց։

—Այս ձմեռ մեր կողմերի ձիւնը առայժմ քիչ է։

Բեր

---

*Սոզիւթլու գիւղ (Ալէքս. գաւառ), 23 դեկտ.*—

Մեզանում այս 1916 թ. աշունը, համեմատած անցեալ տարիների հետ, բոլորովին տարբերւում էր։ Մէջ չեմ բերում հացի և թէ զանազան տեսակ կենսամթերքների չտեսած թանգութիւնը։ Մինչև ամսիս 20-ը տաք և չոր էին անցնում օրերը, Արագած լեռան ծոցէն ու լանջերէն գալիս էր միացած քչքչան առուակները, մի շարք գիւղեր օգտւում էին այդ բարեհամ ու վճիտ ջրերից, իսկ այժմ սառել են յիշեալ ջրերը և թանձր ձիւնի շերտը ծածկել է ամեն ինչ։

Ալէքսանդրապոլ գաւառի դաշտային աշխատանքը վերջանում է սեպտեմբերի վերջին։ Հոկտեմբերի կէսից շրջակայ լեռները ծածկւում են ձիւնով։ Հողագործ գիւղացիք շտապում են ձմրան պաշար պատրաստելու, սայլերով հացահատիկները փոխադրում են ջրաղացները10-20 վերստ հեռաւորութեան վրայ։ Ընդհանրապէս նոյեմբերի մէկից վերջնական կերպով ընդհատւում է գիւղացիների աշխատութիւնը շնորհիւ այն հանգամաքի, որ այդ օրից սկսած յիշեալ գաւառը ծածկւում է ձիւնի թանձր սաւանով։ Դաժանելի աշխատութիւնից ազատ շունչ քաշելով, գիւղացիք, շտապում են հաւաքուել իրենց սովորական սենեակներում, ուր և ամբողջ ձմեռ անց են կացնում հէքիաթներով ու զանազան մնոտի զրոյցներով։

Մի քանի գիւղեր, որոնք սեփական ջուր չունին, վեց ամիս միայն ձիւնով են կառավարւում։ Իրիկնապահին ձիւնը շինում են հակի նման, գիշեր ցուրտն ամրացնում է, իսկ առաւօտեան 2-3 հոգով կարծրացած սառցակոյտը տաւարի գոմն են տանում, այնտեղ անասունների շնչառութիւնից առաջացած գոլորշիների ջերմութեան ազդեցութեամբ սառոյցը հալուելով, սուզւում է ջուրը քարեայ աւազաններում, որից անխտիր խմում են թէ տէրերը և թէ անասունները։ Ներկայումս մի քանի գիւղերում եղջերաւոր անասունների մէջ տարածուած է«դաբաղ» հիւանդութիւնը։ Գիւղացիների տների կառավարելը և իրենց անասունների հոգացողութեան ամբողջ գործը ծանրացած է կանանց վրայ։

Սարգիս քահ. Խալաթեան

---

## ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ

### ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.

Աստապատ գիւղից Արսէն քահ. Տէր-Իսահակեանից յօգուտ գաղթականների 40 ռ., Մարիամ Գայֆէճեանից յօգուտ որբերի 25 ռ., իշխ. Բորիս Նիկողոսեան Արղութեանից մշտական անդամութեան համար 100 ռ., Թիֆլիսի փոխադարձ վարկի ընկ. ծառայողներից յօգուտ փախստականների 14 ռ. 75 կ., Ն. Կ. Բարձր. Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայևիչի գրասենեակից յօգուտ չքաւորների 500 ռ., „Тифл. Лист.»-ի միջոցով զաուրեադ աստիճանաւոր Մ. Մարտիրոսեանից յօգուտ ճաշարանի 3 ռ., «Тифл. Лист.»-ի միջոցով Արշակ և Նինա Եարեանից, Տէր-Մաթէոսեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն, յօգուտ ճաշարանի 25 ռ., Սուսաննա Միխ. Խիթարեանից ի յիշատակ մօր՝ Սոֆիայի յօգուտ ճաշարանի 25 ռ.։

### ՃԻՒՂԵՐ

Վլադիկաւկազի ճիւղից ստացուած է 1500 ռուբլի յօգուտ «Մի հայ մի ոսկի» ֆոնդին։

—

Բաշգիւղի ճիւղի նախաձեռնութեամբ տեղումը բացուած է ծխական դպրոց 100 երեխայի համար։ Դասաւանդութիւնը սկըսուած է սոյն տարուայ յունուարից։

### ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷ

Տիկ. Ս. Օգանեզեանը ներկայացրեց Կոմիտէին «Մի բաժակ թէյի» յունուար ամսուայ հաշիւը՝ փաստաթղթերով, որից երևաց, որ թէյի, սուրճի և այլն վաճառումից գոյացել է 10,205 ռ., զանազան ծախս՝ 6.560 ռ 71 կ., զուտ արդիւնք 3,660 ռ. 69 կ.։

Դերբենդի Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղի միջոցով ստացուեց 400 ռ. յօգուտ «Մի հայ մի ոսկի» ֆոնդին։

—

Գ. Նախագահը զեկուց՝ Տրապիզոնի Հայկ. Կոմիտէից ստացուած հաշիւը, որից երևաց, որ անցեալ տարուայ ապրիլի 9-ից մինչև յունուարի 31-ը Կոմիտէն մուտք է ունեցել 61,348 ռ. 26 կ., փախստականների և որբերի օգնութեան համար ծախսել է 27,253 ռ. 98 կ.։

—

Ալէքսանդրապոլում կազմուած «Տարօն-Տուրուբերան» Ընկերութեան, որը բաց է արել նաև մի շարք արհեստանոցներ աշխատաւոր գաղթականներով, գործի ապահովութեան համար Կոմիտէն յատկացրեց 800 ռ. 50 գործաւորների երեք ամսուայ ռնդի ծախս։

—

Կոմիտէիս լիազոր պ. Կորիւն Ղազազեանը, որը Կոմիտէիս գործերով մեկնել էր գաւառները, տուեց մի ընդարձակ զեկուցում։

Ալէքսանդրապոլի որբանոցներում այժմ հաւաքուել են 530 որբ, որոնց համար Հ. Կենտ. Կոմիտէն որոշեց բանալ արհեստանոցներ՝ չուստանոց և հիւսնոց։ Պետական Նպաստի կրճատման շնորհիւ շրջանում հաւաքուած 300 որբին որոշուեց այդ շրջանի որբերի մօտիկ ազգականներից չխորթացնելու համար որբանոցներ բանալ Ալէքսանդրապոլի շրջանում։ Կարսի շրջանի գաղթականների դրութիւնը շնորհիւ պետական Նպաստի կրճատման՝ անմխիթար է. այդ դրութիւնը բարուոքելու համար որոշուեց դիմել գեն. Թամամշեանին, իսկ շրջանի 100—200 որբերին տեղաւորել որբանոցներում։

Սարիղամիշի շրջանում դրութիւնը մխիթարական է միայն եկող ու գնացող գաղթականների համար, հարկաւոր է մի ապաստարան և սննդատու կայան։ Այս մասին ևս որոշուեց դիմել գեներալ Թամամշեանին։

Լոնդոնից Հայոց Կարմիր Խաչի նախագահ օր. Ռոբինզոնից ստացուել է շնորհակալութեամբ 2482 ռ. Դիլիջանի գաղթականական արհեստանոցի համար։

## ՀԵՌԱԳՐԵՐ

ԲՈՒԲՈՒ—Բալոյեանից.—Դաւառապետ Լոշկարևը գրաւելով պետական պահեստի հարկաւոր թղթերը, փողերը, պահեստն էլ կնքել տուեց։

ԲՈՒԲՈՒ—Բեղլեանից.—Լոշկարևը հաւաքելով գաղթականների զարօրնի գրքոյկները, պահեստին մօտեցողներին ծեծում է, ձերբակալում և գրաւում է գաղթականների եզները։

ԱԼԱՇԿԵՐՏԻ շրջան—Փառաջանեանից.— Ձերբակալուած է Մանգասար գիւղի գաղթ. դպրոցի ուսուցիչը և քահանան։

Այս խնդիրների առթիւ Կոմիտէն անմիջապէս դիմեց Հայաստանի գրաւած վայրերի ընդհանուր նահանգապետին, ինչպէս և գեներալ Թամամշեանին, խնդրելով աջակցութիւն, միաժամանակ Կոմիտէիս լիազոր պ. Ալ. Շարաֆեանին ուղարկելով այդ վայրը քննութեան։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Փետրուարի 16 ին-23-ը

Ալիւր ուղարկուած է Երևան 2 վագոն, Քոլագերան՝ 1, Անեննօ՝ 1, Սանդուր՝ 1, Վաղարշապատ՝ 2, Իգդիր՝ 3, Աշտարակ՝ 1, Ալէքսանդրապոլ՝ 1, Ղարաքիլիսա՝ 2, Գանձակ՝ 1, Ղամարլու՝ 1, Ղարս՝ 2, Քարվանսարա և Դիլիջան՝ 1, ընդամենը 19 վագոն։ Բացի այս Թիֆլիսի նահանգապետի խնդրի և գեներալ Թամամշեանի կարգադրութեամբ Թիֆլիսի պահեստից քաղաքի պէտքերի համար բաց է թողնուած քաղաքային ինքնավարութեան չորս վագոն բ. տեսակի և մի վագոն թեփալիւր։

Ցորեն ուղարկուած է Սարիղամիշ 2 վագոն, Վաղարշապատ՝ 1, Իգդիր և Ղարաքիլիսա՝ մէկական, ընդամենը 5 վ.

Բրինձ ուղարկուած է Իգդիր 1 վագոն և Երևան 1 վագոն։

Գարի ուղարկուած է Իգդիր 2 վագոն.

Շաքարաւազ ուղարկուած է Երևան 282 փութ, Վաղարշապատ 192։

Թէյ ուղարկուած է Իգդիր 500 ֆ. և Ներքին Ախտա՝ 200։

Քարվանսարայի կօօպերատիւի խնդրի համաձայն ծախուած նրանց 1 վ. եգիպտացորեն։

Նոր գնումներ. Գնուած է Փոթիում 10 վագոն եգիպտացորենի ալիւր և Թիֆլիսում 600 պ. լոբի։

Գեներալ Թամամշեանի կարգադրութեամբ մօտ ժամանակներումս Ընկերութիւնը կստանայ 120,000 ռ. Հիւսիսային Կովկասում և Ղարսի նահանգում գնուած սերմացու, որը տալու է գաղթականներին իրենց արտերը ցանելու համար։

Սոյն նպատակով Ղարսի շրջանում կազմակերպուած է ալիւրի փոխանակումը ցորենի հետ։

Գեներալ Թամամշեանը առաջարկել է Խոյի և Դիլմանի շրջանում գաղթականների համար պահեստ բանալ և խնդրում է յայտնել՝ արդեօք հնարաւո՞ր է այդ շրջաններում կամ Մակուի սահմաններում ցորեն գնել այդ պահեստի համար։

Համաձայն սոյն գրութեան հեռագրուած է Վան լիազոր Օհանջանեանցին, որպէսզի սա մեկնի Պարսկաստան ուսումնասիրելու պայմանները և զեկուցանելու Ընկերութեան։

Գեներալ Թամամշեանի կողմից Երևանի շրջանն է մեկնել պ. Ա. Ե. Գուրևը, շրջանի պահեստի գործունէութիւնը քննելու։

## ՀԵՌԱԳԻՐ

Սարիղամիշ—Քօթանջեանից

Պարենաւորման բաժանմունքին.

Առաջարկում են մինչև 5,000 փութ ցորենի փոխարէն ստանալ սպիտակ ալիւր։ Մի փութ ալիւրին տալիս են 1 պ. 3 ֆ. ցորեն, փոխադրութեան ծախսերը մեր հաշուին։ Դրամով ցորենը ծախւում է փութը 9 ռուբ., փոխարինումը սկսել ենք։

---

# Քրոնիկոն

Ռուս գրող Ե. Ն. Չիրիկովը եկել է Թիֆլիս և Երաժշտական դպրոցի դահլիճում կարդաց դասախօսութիւն «Ռուսական ժողովրդական հէքիաթները» նիւթի մասին։

—Սիմոնինների մուֆթի Գաիբովի ընտանիքին. Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը, Կ. Կոմիտէն բարձր գնահատելով հանգուցեալ կրօնաւորի, երջանկայիշատակ մուֆթու արժանիքները, որ ջերմագին քարոզիչն էր սիրոյ, յարգանքի և փոխադարձ վստահութեան Կովկասի ազգերի յանուն ընդհանուր բարիքի և ծաղկման մեր երկրի, յայտնում է ձեզ և բովանդակ սիւննի հասարակութեան իւր խորին թախծի և անկեղծ ցաւակցութեան զգացմունքը։

Նախագահ Ցարութիւնեան

—Գրաւականով բանտարկութիւնից ազատ են արձակուած Ա. Միլեան և Գ. Աղիլխանեան։

—Փետրուարի 22-ին կանանց բարձր դասընթացքների դասախօս Տ. Մարգարեանի նախաձեռնութեամբ ուսուցչական ինստիտուտի շէնքում բացուեց բարոյագիտութեան դասընթացք արտադպրոցական Ընկ. միջոցներով։

—Վարդանանց տօնի առիթով Նահանգապետը մի նամակ է ուղարկել քաղաքային վարչութեանը, որի մէջ ասում է, որ ոստիկանապետի պաշտօնական հրամանը եղել է սոսկ ձևական բան, և կարծում է, որ հայերը չպէտք է վիրաւորուեն այդ հրամանից։ Նահանգապետն այն միտքն է յայտնում, թէ Վարդանանց տօնը կարող ներմուծուել պահուող տօների շարքը։ Քաղաքային Դուման չի բաւարարուել այդ բացատրութեամբ, ուստի խնդիրը յանձնել է իրաւաբանական յանձնաժողովին։

—Մեծ պասի վերջին շաբաթներին և Զատկի տօներին, Հայ Գրողների Ընկերութեան նախաձեռնութեամբ կայանալու են Վ. Բրիւսովի և Իւրիյ Ա. Վեսելովսկու դասախօսութիւնները։

—Մի խումբ վրացի բանուորներ կազմակերպում են հրատարակչական Ընկերութիւն յատկապէս վրաց գրքեր հրատարակելու։ Փայաբաժինը 25 ռ. է։ Կանոնադրութիւնը շուտով ներկայացուելու է հաստատութեան։

—«Մեղու» աշխատանքի Տունը իր արհեստանոցներին կից բաց է արել ծխախոտի թուղթ պատրաստելու առանձին բաժանմունք։

—Վրաց մէջ գրագիտութիւն տարածող Ընկերութեան նիստին ներկայ են եղել ինը հարիւր երեք անդամ։—Սրա կէսը, կէսի կէսը գէթ երևէր մեր ազգում...

—Վախճանուել է Վառվառա Վ. Թամամշեանը (Կովկասի փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանի մայրը), որ կենդանութեան ժամանակ 10,000 ռ. էր նուիրել Կ. Հ. Բ. Ընկերութեան գիւղական դպրոցների օգտին։

—Կովկասեան բուժավայրերի (կուրորտներ) Ընկերութեան համագումարը, որ կայանալու էր մարտի 5-8, յետաձգուած է մայիսի 6-9։

—Գաղթականական կազմակերպութեանց համագումարը, որ կայանալու էր Երևանում մարտի 12-14, յետաձգւում է մարտի 24, 25, 26, որովհետև բացի մի քանի հանգամանքներից Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանը ևս խնդրում է յետաձգելու համագումարը, որպէսզի ինքը և Պետական Դումայի միւս երկու հայ անդամները՝ պ. Պ. Աճէմեանը և Ջրանգուլեանը կարողանան մասնակցել։

---

# Տաճկահայեր

## ԲՈՒԼԱՆԸՂԻ ԿՈՏՈՐԱԾԸ*)

### ԱՊՐԻ

II

Կոփ գիւղաքաղաքից 20 վերստ դէպի հարաւ-արևմուտք, Բլէջանի լեռնէն 2½ վ. հեռու, տափարակ դաշտի վրայ ընկած է Ապրի գիւղը, որ ունէր 30 տուն հայ և 209 տուն քիւրդ ազգաբնակութիւն։ Իբրև շէխաբնակ գիւղ, ամենից դաժան. իւր գազանութիւններով ու շահատակութիւններով ամբողջ շրջանին յայտնի Շէխ Սըլէն էր այդ գիւղի բացարձակ տէր ու տնօրէնը, որու ամեն մի հրամանին, իբրև երկնային պատգամի, պէտք է անսար իւրաքանչիւր րայեայ, այլապէս՝ այդպիսու համար մահը անխուսափելի էր։

Շէխ Սըլէն յայտնի էր նաև իւր Թէքիա-օճախով (ուխտատեղի), որը բուլանըղցիներին ծանօթ է «Ապրուայ օճախ» անունով, որու մասին պատմւում է թէ՝ այդ օճախը յունական եկեղեցի է եղած. Շէխի պապերի ծագումը ևս կարծւում է թէ յոյներից է։

Համաձայն ականատեսների տուած տեղեկութեանց, յիշեալ զիարէթի դրան ճակատաքարին վրայ զետեղուածն էր մի քանի տող բևեռագիր (թէ՞ յունարէն) արձանագրութիւն, որ արտագրուած է եւրոպացի մի հնասէր այցելուի կողմ է, իսկ յետոյ, որպէսզի զիարէթի քրիստոնէական շրջանին պատկանելը չգիտցուի հայերի կողմից՝ քիւրդերը քերելով աւրած են այդ արձանագրութիւնը։ (!!)

Երբ ընդհանուր ջարդի հրամանը հասկանում են Ապրուեցիները, ահի ու սարսափի մատնուած դիմում են Շէխ Սըլէի գթասրտութեան։ Շէխը նախապէս քաջալերելով հայերին որ չվախենան և իբրև վարձ իւր պաշտպանութեան, ամեն օր խեղճ հայերին 20 հատ զինուած քիւրդ խուլամների հսկողութեան տակ աշխատեցնում իւր խոտերը հնձել տալով։ Նոյն իսկ պայմանաւորում էր հայերի հետ ասելով. «եթէ ռուսները մեր երկիրն առան, արդէն մենք (քիւրդերս) կը յայտնենք մեր հպատակութիւնը, կը մնանք ձեզ հետ և մեր այս տարուայ հողի բերքն էլ միասին կը վայելենք»։ Խոտհարքից յետոյ մի օր էլ բարեացակամ Շէխ Սըլէնի ցուցմունքով ձերբակալւում են հայերից 20 հոգի, և զինուած քիւրդերի հսկողութեան տակ տարւում Լիզ՝ Թուրք զօրաբանակի հրամանատարի քով, ուր բոլորն էլ գնդակահարւում են։ Իսկ գիւղի մէջ մնացած հայ, կին, ծեր և երեխաներն ալ անգթաբար կոտորւում են Շէխի խուլամների ձեռքով

300 հոգուց բաղկացած Ապրուեցիներէն ազատուած են միայն 15 հոգի պառաւ կին և երեխայ և 6-7 հատ տղամարդ, որոնք կոտորածէն առաջ Կովկասում են եղել։ Գերի տարուած են 10 հոգի երիտասարդ կանայք և հասակաւոր աղջիկներ։

Նախ քան կոտորածը Ապրին ունէր 350 գոմէշ, մատակ, եզ և կով. 400 գլուխ ոչխար, 1 ձի և 1 եկեղեցի։ Բացի այդ անշարժ կալուածները մնացել են թշնամու ձեռքը։

III

### ԳԵԲՈԼԱՆ

Կանիէսըպի (Սպիտակ աղբիւր) կոչուած տեղին վրայ շինուած է այս գիւղը, որը դաշտաձև դիրք ունի։ Ջարդէն առաջ ունէր 20 տուն հայ և 60 տուն քիւրդ։ Գեբոլանը սեփականութիւնն էր Շէխ Քեամիլի չորս որդւոց, որոնց ամենամեծ և ազդեցիկն էր Շէխ Մսթոն։

1915 թ. մայիս 1-ին, երբ Կոփի և մօտակայ մի քանի գիւղերի ժողովուրդը փախուստ տալով կապաստանեն Մանազկերտ՝ ռուս. բանակը, Գեբոլանի հայութիւնը թողած տուն, տեղ և ամեն ինչ կապաստանեն ներքին Բուլանըղի կենդրոնը՝ Լիզ, ազատուելու Շէխ Մսթոյի և եղբայրների բարբարոսութիւններէն։ Բայց Շէխը դիմում է խորամանկութեան և անձամբ Լիզ գնալով խոստանում է Գեբոլանցիներին հարկ եղած պաշտպանութիւն է։

Խեղճերը վերադառնում են գիւղը. միւս օրը արիւնկըզակ գայլերի նման Շէխ Մսթոն, իւր եղբայրներ՝ Շառօն, Ապտիւրահիմ և Համզօն իրենց քիւրդ ծառաներով միասին յարձակւում են հայերի վրայ և բոլորին տեղն ու տեղը սպանում։

Գեբոլանն ունէր 20 տուն 250 հայ բնակչով, որոնցից սպանուած են 220 հոգի, ազատուած են 30 հոգի՝ Կովկասում գտնուած մի քանի տղամարդկանցով միասին։ Քիւրդերը իրենց հետը տարել են 5 հատ գեղեցիկ հարսներ։

Ջարդէն առաջ ունէր 300 հատ մեծ եղջիւրաւոր անասուն. 400 ոչխար, 8 ձի, 1 փայտաշէն եկեղեցի։

Գ. Մանասեան

14 փետր. 1917 Համամլու

*) Տես «Համբաւաբեր» № 6։

## ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Շվէյցարիայի Ցիւրիխ քաղաքում հրատարակուող «Orient Mission» ամսագրի յունուարի համարում զետեղուած են մի շարք յօդուածներ տաճկահայկական զարհուրելի կոտորածների մասին։ Ի միջի այլոց կայ Պ. Ռոբբախի մի յօդուածը «Հայերն իբրև քաղաքական և կուլտուրական ազդակ արևելքում» վերնագրով։ Գրքին կցուած է Տաճկահայաստանի քարտէզը։

# Գեղարուեստ

## ՄԱՍԻՍԸ

Անթիւ ձմեռներ՝ հազա՛ր ու հազար, եկան ու անցան,
Ու դու մնացիր, աւերակ երկրի խրո՛խտ յուշարձան։
Նորից դժնդակ, անողոք ձմեռն ամուր կապանքով
Քեզ շղթայ դրած՝ ուզում է խեղդել մահաշունչ բըքով,
Բայց արքայական պսակը գլխիդ՝ ճաճանչո՛ղ հրատ,
Որպէս գահազուրկ հզօր ինքնակալ՝ հեգնում ես շղթադ։

Ու ձիւն ու բուքի, սառնամանիքի մահաբեր գրկում
Երազում ես դու վարդ ու մանուշակ, յասմիկ ու քրքում։
Փլատակ երկրի խրոխտ յուշարձան, պարզուի՛ր վե՛ր ու վե՛ր.
Երազը սրտին՝ միշտ քեզ է նայում երկիրը աւեր.
Նրա կրծքի տակ սիրտ է տրոփում՝ քեզպէս մեծ, հսկայ,
Ու միշտ երազում, թէ ազատութեան գարունը կըգայ...

Ց. Պետրոսեան

---

## ՄԱՀՍ

### Սիրելի քրոջս

Քո՛յր, իմ պատանը հիւսիր,
Արև շողէն ոսկեհուր.
Պիտի անհունը անծիր,
Ըլլայ դամբանըս թափուր...

Կուզեմ. դիակս անհամբո՛յր,
Տա՛ն կրակի բոցերուն...
Ու մոխիրնե՛րը իմ, քո՛յր,
Թո՛ղ տարտղնեն հովերո՛ւն...

Ո՛չ մէկ արցունք, ոչ մէկ ջա՛հ,
Քո՛յր, չե՛մ ուզեր.
Ամպե՛րը լոկ լան իմ մահ,
Ու ջահ ըլլան ինձ աստղե՛ր...

Թո՛ղ չաղօթեն ինձ վրայ,
Եւ ոչ մա՛հս սգան կոյր...
Ա՛րևն աղօթքս պիտ ըլլայ,
Ու խաւարը սո՛ւգս, քո՛յր։

* * *

Քո՛յր, իմ պատանը հիւսիր
Արև շողէն ոսկեհուր.
Ու թող անհունը անծիր,
Ըլլայ դամբանըս թափուր...

1915 S. Phinx

# Գրականութիւն

## ԻՆՉՈ՞Ւ ԵԿԱՐ

Ս... ԻՆ

I

Չէ՞ որ դու միշտ ասում էիր, ես ամեն բանից վեր սիրում եմ անկեղծութիւնը.

Ես էլ ոչինչ չունէի՝ բացի անկեղծութիւնից.

Բայց քո փառասիրութիւնը գերակշռեց անկեղծութեանը։

Եւ այնուհետև մեր ճանապարհները բաժանուեցին...

Դու ցանկանում էիր, որ առաւօտեան արևգակի ճառագայթը առաջինը քեզ վրայ ընկնի և երեկոյեան վերջալոյսը քո վրայից վերջինը հեռանայ.

Դու ցանկանում էիր, որ քեզ նուիրած ծաղկեփունջը, վաղորդեան բուրաւէտ ցողով թրջուած և անթառամ լինի.

Դու ցանկանում էիր, թանկագին գոհարներով զարդարուել և հիացմունք առաջացնել շրջապատողներիդ մէջ.

Դու ցանկանում էիր, շքեղ, ընդարձակ պալատանման բնակարանում ապրել.

Դու ցանկանում էիր, միշտ ժպտերես դէմքերով շրջապատուած լինել և լսել սիրալիր զրոյցներ.

Դու երազում էիր...

Ինչո՞ւ եկար.

Եկել ես ծիծաղելու իմ անզօրութեան վրայ, որ իմ անկեղծութիւնը չի կարող գոհացում տալ քո ցանկութիւններին.

Գնա՛...

II

Երբ կը զգաս, որ արևգակի ճառագայթները և երեկոյեան վերջալոյսը միլիոնաւոր արարածների է պատկանում.

Երբ կը զգաս, որ քեզ նուիրած ծաղկեփունջը արհեստական հոտաւէտ ջրով է ցօղուած և շուտով կը թառամի.

Երբ կը զգաս, որ քո թանկագին գոհարներով շրջապատողներիդ արհամարհանքն ես շահում.

Երբ կը զգաս, որ քո պալատի ընդարձակ դահլիճը մենակեացի խցիկից էլ նեղ է.

Երբ կըզգաս շրջապատողներիդ ակամայ կեղծ ժպիտները և խօսքերը, որոնք լոկ լոպէական հաճոյախօսութիւններ են.

Եւ երբ վերջապէս հիասթափուած կը լինես ամենից և կը կարօտես անկեղծութեան, այն ժամանակ՝

Ե՛կ...

—

Բայց չէ՞ որ, դու դեռ երազում ես...

Ինչո՞ւ եկար։

Դ.

# Մատենախօսութիւն

*«ՀԱՅ ԼԵԶՈՒ»-Հայոց միջնակարգ դպրոցների գ. և մանաւանդ դ. դասարանի դասագիրք և բանահիւսութեան տեսութիւն: էջ XXXV—422, գինը՝ 1 ռ.: Կազմեց Պ. Հովուեան:*

Մեր մայրենի լեզուի դասագրքեր կազմողները սահմանափակւում են գլխաւորապէս միայն I, II, III, IV և մասամբ V տարուայ դասագրքերի հրատարակութեամբ: Ծխական դպրոցների V և միջնակարգների II դասարանից յետոյ մայրենի լեզուի դասագրքերի չափազանց շատ սուր ճգնաժամ (կրիզիս) է ստեղծւում: Ահա այդ բացն է, որ այսօր գալիս է ծածկելու Ներս. Դպր. հայոց լեզուի երկարամեայ դասատու պ. Պ. Հովուեանը իր „Հայ Լեզու" դասագրքով, որն արդէն երկրորդ տարին է ընդունուած է ինչպէս Ներսիսեան, այնպէս և մի քանի միջնակարգ դպրոցներում: Պ. Հովուեան այս դասագիրքը կազմելիս ի նկատի է ունեցել, որ Գ. դասարանից սկսած դասագրքի նիւթերը գլխաւորապէս պէտք է աշակերտների մէջ մայրենի լեզուի օրինակելի ոճ զարգացնեն: Բերականական ճշտութիւնը, մտքերն արտայայտելու հմտութիւնը պէտք է կենդանութիւն ստանան ամբողջական, ինքնուրոյն շարադրութիւններով. աշակերտի խօսքն ու գրուածքը պէտք է լինեն մայրենի լեզուին հարազատ, մաքուր և ճիշտ ոճով: Նիւթերը պիտի օժտուած լինեն գեղարուեստական արժանիքով. գրուածքի բովանդակութիւնը պէտք է գրական ճաշակ զարգացնի և որովհետև Գ. դասարանից սկսած աշակերտները պէտք է հետզհետէ գաղափար կազմեն բանահիւսութ. տեսութեան մասին, ուստի և դասագրքի մէջ տեղաւորուած նիւթերը, այդ տեսակէտից էլ պէտք է տիպիկ օրինակներ լինեն: Ահա այն գլխաւոր հիմունքները, որոնցով առաջնորդուել է կազմողը: Նա նիւթեր է զետեղել դասագրքի մէջ մատենագրական գրեթէ բոլոր տեսակներից—նկարագրակ. յարադրութիւններ, ճանապարհ. նկարագրութիւններ, պատմողական հարաբերութիւններ, կենցաղական գրուածքներ, պերճախօսութեան նմուշներ, պատկերներ, վիպակներ, գեղարուեստ. պատմուածքներ, բերթուածներ (պոէմներ), և քնարական երգեր: Պէտք է ասել, որ դրանց համեմատ եղած նիւթերի ընտրութիւնը մեր և օտար հեղինակներից կատարուել է շատ յաջող:

Մոռացութեան չի տրուել նաև տաճկահայ գրական լեզուն և գաւառաբարբառը, որովհետև, ինչպէս որ կազմողն է նկատում իւր յառաջաբանում, Գ. դասարանից սկսած աշակերտներն այնքան հասունացած պիտի լինին, որ բաւարար չափով տիրապետեն այդ բարբառներին: Թէ նիւթերի դասաւորումը, մանաւանդ բազմազանութիւնը, թէ ընտրութիւնը և թէ կազմողի կողմից կատարած լեզուական մշակումներն ու անհրաժեշտ փոփոխութիւնները կատարուած է խնամքով: Այդ օրինակները կարող են մեր աշակերտների համար օրինակելի ուղեցոյցներ լինել, թէ շարադրութիւնները կանոնաւոր կերպով մշակելու եւ թէ նիւթերը վերլուծելու, քննդատելու համար, որոնց բացակայութիւնը մեր միջնակ. դպր. աշակերտների ամենամեծ թերութիւնն է եղել միշտ: Որոշ երկերից յետոյ կազմողի կողմից մշակուած են հետաքրքրական հարցեր, որ այդ երկերը քննելու տեսակէտից որոշ դիւրութիւններ են տալիս թէ դասատուներին և թէ աշակերտներին: Չմոռանանք յիշել, որ բանահիւսութեան տեսութիւն աւանդելու համար գրքի սկզբում շեշտուած է «բանահիւսութեան տեսութիւն» վերնագիրը կրող 35 երեսնոց մի կարևոր աշխատութիւն: Վերջացնելով մեր համառօտ տեսութիւնը և ուրախութեամբ յանձնարարելով դասագիրքը մեր միջնակարգ ու վեցամեայ և եօթնամեայ ծխական դպրոցներին, թոյլ ենք տալիս մեզ նկատելու, որ առաջին—բանաստեղծութեան ընդհանրապէս քիչ տեղ է տրուած և երկրորդ, որ մոռացութեան է տրուած մի քանի ականաւոր գրական դէմքեր, ինչպէս Շիրվանզադէ, Սունդուկեան, Նալբանդեան, Գամառ-Քաթիպա, որոնց տիպիկ գրուածքները նոյնպէս լեզուական և անհրաժեշտ ուղղումներով ցանկալի էր, որ մէջ բերուած լինէին դասագրքի մէջ, որպէսզի Գ. և մասամբ Դ. դասարանի աշակերտները մեր բոլոր ականաւոր գրողների մասին մի ամբողջական ծանօթութիւն ունենան:

Գիսակ

---

## ՎՐԻՊԱԿ

«Համբաւաբեր»-ի № 7-ում, երես 160, մշտական անդամների ցուցակում Խորհրդի նախկին անդամ պ. Սարգիս Խարազեանի ազգանունը սխալմամբ տպուել է Խարազանեան:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

Լոյս տեսաւ և վաճառւում է Թիֆլիսի գրավաճառանոցներում

ԼԷՕ

## ՎԱՐԴԱՆԱՆՔ

Պատմական դրամա, հինգերորդ դարի շարժումներից, 3 գործողութեամբ։

ԳԻՆԸ 1 ռ. 20 կ.

---

ԲԱՑՈՒԱԾ Է

# ՊԱՏԱՆԻ

(VIII-ՐԴ ՏԱՐԻ)

Գրական-գեղարուեստական ալմանախի 1917 թ. բաժանորդագրութիւնը։ ԱԼՄԱՆԱԽԸ լոյս է տեսնելու երկու ամիսը մի անգամ, բաղկացած 48 մեծադիր էջերից։

«ՊԱՏԱՆԻ»-ն հրատարակուելու է աշխատակիցների ուժեղացրած կազմով՝ երիտասարդ գրողների մասնակցութեամբ։

Բաժանորդագինն է՝ ամեն տեղ 3 ռ. հատավաճառ 60 կ. Թիֆլիսում, Վեց գրքի համար, բացի խմբագրատանից բաժանորդագրուել կարելի է նաև «ԳԻՐ» գրախանութում։ Խմբագրութեան հասցէն՝ Тифлисъ, Ходживанская 5, М. Эприкянъ.

---

## Հարկաւոր են պաշտօնեաներ

1) Կառավարիչներ (ռուսերէն գիտցող) գաղթականական մթերքների պահեստների։

2) Հաշուապահներ (ռուսերէն գիտցող)

3) Որբանոցների կառավարչուհիներ ուսումնական ցէնզով։

4) Գաղթական հիւանդանոցների համար ֆէլդշեր և ֆելդշերուհիներ, գթութեան քոյրեր։

Ցանկացողները պէտք է դիմեն Կ. Հ. Բ. Ը-ութեան Խորհրդին (Тифлисъ, Абасъ-Абадская площадь, № 7).

3—1

---

## Հարկաւոր է ուսուցչուհի

Երևանի Վասպ. Կանանց Միութեան արհեստանոցի համար հարկաւոր է ձեռագործի և ձևագիտութեան մասնագէտ վարժուհի. ցանկացողները թող դիմեն Կ. Հ. Բ. Ընկ. գրասենեակ։

3—1

---

## Գաղթականական ցուցահանդէսի հայկական բաժնի յանձնաժողովը

ընդունում է Պետրոգրադում ցուցադրելու համար հայ գաղթականների պատրաստած կամ նրանց նիստ ու կացին վերաբերեալ զանազան իրեր, այսինքն կահ-կարասիք, զգեստներ, զարդեր, գործուածքներ, հիւսուածքներ, ասեղնագործներ, նկարներ, ձեռարուեստի արտադրութիւններ ու գործիքներ, երաժշտական գործիքներ, հին տեղական սառը զէնքեր են։

Գրասենեակը (Պետրոս Մեծի փողոց, տ. Աւան-Իւզբաշեանի № 6 բակում, улица Петра Великаго, д. Аван-Юзбаша № 6) բաց ամեն օր, բացի կիրակի և տօն օրերից, ցերեկուայ 12—2 ժամը։ Այստեղ պէտք է դիմեն նրանք, որոնք կամենում են ցուցահանդէսի համար իրեր առաջարկել կամ Յանձնաժողովի հետ բանակցել։

2—2

---

„ՆՒԷՐ ՄԱՆՈՒԿՆԵՐԻՆ" ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ԲԱՑՒԱԾ Է 1916-17թ. ՈՒՍՈՒՄՆ. ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

(1916 դեկտեմբերից մինչև 1917 մայիսը)

# ՀԱՍԿԵՐ

(ՏԱՍՆԵՒՄԷԿԵՐՈՐԴ ՏԱՐԻ)

## մանկական պատկերազարդ ամսագիր

մշտական աշխատակցութեամբ ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ և ԱԹ. ԽՆԿՈՅԵԱՆԻ

Լոյս է տեսնելու ՎԵՑ համար և ՎԵՑ յաւելուած։ **ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ** լինելու են՝ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՀԵՔԻԱԹ, ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՊԱՏՄՈՒԱԾՔ, ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ԶՐՈՅՑ, ՄԱՆԿԱԿԱՆ ՎԷՊԻԿՆԵՐ, ՄԱՆԿԱԿԱՆ ՊԻԷՍ։

Բաժնեգինն է ճանապարհածախսով

(Յաւելուածներով)

Վեց համարի 8 ռ.
Ռուսաստանում 3 ռ.

Պարսկաստանում—3 ռ.
Արտասահմանում—8 ֆր.

1906 թ. յունուարից մինչև 1915 վերջը 27 ռ. իսկ առանց յաւելուածների 18 ռ. 50 կ.

Ապառիկ բաժանորդագրութիւն չի ընդունւում

Խմբագիր Ստ. Լիսիցեան

Խմբագրութեան հասցէն՝ Թիֆլիս, Սերգէյեան փողոց, 20.
Тифлисъ Редакція журнала Аскеръ. Tiflis (Caucase) Rédaction du journ. «Hasker».

Թիֆլիսում կարելի է գրուել «Գիր» և «Գուտենբերգ» գրախանութներում, Բագւում՝ Բ. Հ. Կուլտուրական Միութեան գրասենեակում, և կայսրութեան այլ տեղերում,

ԲՈԼՈՐ ՓՈՍՏԱՏՆԵՐՈՒՄ

Թեհրանում պ. Ա. Գարագաշի մօտ 3—3

Տպարան Ն. Աղանեանի Тип. Н. Аганьянца, Полицейская 7. Дозв. военной цензурой